# ՔՐԻՍՏԱՓՈՐ
# ԿԱՐԱ - ՄՈՒՐԶԱ

## ԴԱՇՆԱԿԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ

Գահիրէ

2000

# CHRISTAPHOR KARA - MOURZA

## WORKS FOR PIANO

Edited and annotated
by
HAIG AVAKIAN

Cairo
2000

# ՔՐԻՍՏԱՓՈՐ
# ԿԱՐԱ - ՄՈՒՐՉԱ

## ԴԱՇՆԱԿԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ

Խմբագրութիւն, ներածութիւն եւ ծանօթագրութիւն՝
**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Գահիրէ
2000

# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կու զանք մեր խորին շնորհակալութիւնները յայտնելու Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան Գաւիրէի մասնաճիւղի վարչութեան եւ իր յարգելի ատենապետ տիար Պերճ Թէրզեանին, որոնք յօժարութեամբ ընդունեցին եւ ամէն դիւրութիւն ընծայեցին տպագրելու այս աշխատութիւնը:

Շնորհակալութիւն՝ Երեւանի «Չարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի տնօրէնութեան եւ երաժշտական բաժինի գիտաշխատողներուն, որոնք տրամադրեցին մեզի Կարա-Մուրզայի ձեռագիրները:

Շնորհակալութիւն՝ Երեւանի Ազգային Գրադարանի, Գահիրէի Ազգային Առաջնորդարանի «Թորգոմեան» մատենադարանի, «Արեւ» օրաթերթի, Յուսաբեր Մշակութային Ընկերակցութեան «Փալանճեան» մատենադարանի վարիչներուն, ինչպէս նաեւ բազմաթիւ ազնիւ անհատներու, որոնց գրադարաններուն հարուստ նիւթերէն մեծապէս օգտուեցանք:

Շնորհակալութիւն՝ բանասէր Տիգրան Գէորգեանին, լեզուական եւ խմբագրական նշումներուն համար:

Շնորհակալութիւն՝ տիար Մարտիրոս Պալաեանին, հրատարակչական վերահսկողութեան համար:

Հ. Ա.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Վաստակաշատ երաժշտահան եւ խմբավար Քրիստափոր Կարա-Մուրզա (1854, Ղարա-Սու-Բազար (Ղրիմ) - 1902, Թիֆլիս) արժանաւոր տեղ կը գրաւէ Հայկական երաժըշտութեան պատմութեան մէջ՝ իբրեւ նախակոմիտասական շրջանի առաջապահ եւ Կոմիտաս վարդապետի յայտնութիւնը նախապատրաստող կարապետներէն մէկը:

Իր դերին ու նշանակութեան խորապէս գիտակցած են Հայ երաժշտագէտներն ու բանասէրները: Այսպէս, Ռուբէն Թէրլէմէզեան կը գրէ Հետեւեալը. «Առաջին անգամ մեր մէջ քառաձայն երգեցողութիւն տարածողը Կարա-Մուրզան եղաւ եւ դրա Համար նա շատ դժուարութիւնների Հանդիպեց ...: Ճիշտ է որ չունենալով երաժշտական խոր պատրաստութիւն նա չկարողացաւ Հայկական երաժշտութիւնը զտել օտար եւ աւելորդ տարրերից, բայց Կարա-Մուրզան որպէս Հայ ժողովրդական երգի պրոպականտիստ եզակի եղաւ» [1]:

Յայտնի բանասէր ու բանահաւաք Արամ Երեմեան պարզ ու բովանդակալից տողերով կ'արտայայտէ իր տեսակէտը. «Նրա (իմա՝ Կարա-Մուրզայի, Հ. Ա.) նշանախօսն էր - լայն խաւերու մէջ տարածել ժողովրդական երգը, բազմաձայն երգեցողութիւնը: Դա այն շրջանն էր, երբ Հայ ժողովուրդը գաղափար անգամ չունէր բազմաձայն երգեցիկ խմբի եւ երգեցողութեան մասին: Եւ Կարա-Մուրզան Հանդիսացաւ առաջին դրօշակակիրը: 17 տարի շարունակ նա յամառ, անդուլ, անվկանդ աշխատանքով պայքարեց այդ ասպարիզում» [2]:

Վիեննայի Մխիթարեան միաբան, Հմուտ երաժշտագէտ Հ. Գրիգոր Հէպոյեան ունի իր Հեղինակաւոր կարծիքը. «Հայ Երաժշտութեան Պատմութեան մէջ Կարա-Մուրզայի դերն ու արժանիքը ոչ միայն մեծ, այլ եւ աննախընթաց է՝ քանի մը գլխէ: Ի՛նքը եղաւ Հայ ժողովրդական երգերուն առաջին Հաւաքողն ու ձայնագրողը, զանոնք առաջին անգամ քառաձայն ներդաշնակողը, առաջին Հայկական քառաձայն երգչախումբ կազմողն ու Հրապարակային Համերգներ տուողը: Ազգային-ժողովրդական բազմաձայն երգեցողութեան ճաշակը մեր ազգին մէջ արթնցնելու *առաջին պատիւը*՝ ի՛րն է անվիճելիօրէն...:

«Կարա-Մուրզայի շնորհիւ Հարթուեցաւ Հայ ժողովրդական երգի ու բանահիւսութեան մշակումի այն ճամբան, որուն վրայէն ապա քալեցին աւելի՛ Հաստատ քայլերով՝ *Մակար Եկմալեան, Կոմիտաս Վարդապետ, Սպիրիդոն Մելիքեան* եւ ուրիշներ» [3]:

Խորհրդահայ ականաւոր երաժշտագէտ Ալեքսանդր Շահվերդեան կը գրէ. «Կարա-Մուրզայի աշխատանքներում, նրա ձգտումներում եւ ռէալ նուաճումներում արտացոլուած են տուեալ էպոխայում Հայերի մէջ տեղի ունեցած երաժշտական-Հասարակական շարժման կարեւորագոյն առանձնայատկութիւնները, այդ շարժման բոլոր Հակասութիւններով, նրա սաՀմանափակութեամբ ու աղքատութեամբ եւ միաժամանակ՝ Հսկայական պոտենցիաններով ու Հեռանկարներով Հանդերձ» [4]:

Կարա-Մուրզայի երաժշտական գործունէութեան կեդրոնը թէեւ Կովկասն էր, բայց իր Հռչակը տարածուած էր արտասահմանի Հայաբնակ գաղութները եւս:

Օրինակ, պոլսահայ մամուլը ջերմօրէն կ'ողջունէ երեսուներեքամեայ երաժշտահանին Համերգային այցելութիւնը Պոլիս, եւ 1887 թուականին ճշտօրէն կողմնորոշուելով, կը նշէ՝ թէ Կարա-Մուրզա «երաժշտութեան մէջ իւր յատուկ ուսումնասիրութեան առարկայ ըրաւ Հայկական ազգային երգերը, զորս ժողովել, երաժշտական արուեստին պաՀանջմանց Համեմատ կանոնաւորել եւ ձայնագրել (*նօթայ*ի վերածել)՝ իւր գլխաւոր աշխատութիւն եղաւ» [5]:

Նոյնպէս Պոլսոյ մէջ, Արամ Անտոնեան Կարա-Մուրզա երեւոյթը կը խտացնէ այսպէս. «Երաժշտութեան առաքեալի պէս բան մը եղած է, եւ իր յաջորդական *թուռնէ*ները մէյ մէկ առիթ դարձած են իրեն՝ նոր սիրողներ ստեղծելու գեղարուեստի այդ գրաւիչ ճիւղին շուրջը» [6]:

Վերոյիշեալ բոլոր երաժշտագէտներն ու յօդուածագիրները՝ միաձայն կ'ընդունին Կարա-Մուրզան իբրեւ Հայկական բազմաձայն խմբերգութեան Հիմնադիր ու անխոնջ տարածող:

Կարա-Մուրզայի գլխաւոր ներդրումը՝

երգային արուեստին մէջ ըլլալով, գործիքային չատ քիչ ստեղծագործութիւններ յօրինած է:

Գործիքային բնագաւառէն մեզի հասած են դաշնակի երկու ստեղծագործութիւն՝ *Պօպուրի հայկական երգերից* (տպագրուած), եւ *Դամբանական չունուագ ի մահ Մեծին հրապարակախօսի Գրիգորի Արծրունւոյ* կամ Marche Funèbre (անտիպ), որոնք հետաքըրքրական են երաժշտահանի գործիքային մտածողութեան ուսումնասիրութեան տեսանկիւնէն: Կը գտնուի նաեւ երկրորդին այլ տարբերակ մը՝ գրուած դաշնակի եռանուագի (դաշնակ, ջութակ, թաւջութակ) համար: Ըստ Մաթէոս Մուրադեանին, Կարա-Մուրզա յօրինած է նաեւ դաշնակի երրորդ ստեղծագործութիւն մը՝ *Դամբանական Պետրոս Ադամեանի յիշատակին*, որուն ձեռագիրը կորսուած է [7]:

## ՊՕՊՈՒՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԳԵՐԻՑ

Հայկական երգերու այս ծաղկաքաղը՝ Կարա-Մուրզայի ստեղծագործական ուղիի վաղ չրջանի երկերէն է:

Թիֆլիսի *Մչակը*՝ իր լուրերու բաժինին մէջ. յայտարարելէ ետք ստեղծագործութեան տպագրութիւնը, կը բաւարարուի աւելցնելով՝ թէ «այդ պիէսան բաւական աջող է եւ դժուար չէ պիանօի վրա ածելու համար» [8]:

*Պօպուրի*ն տպագրուած է Մոսկուայի մէջ, 1883 թուականին եւ կը հանդիսանայ Կարա-Մուրզայի կենդանութեան տպագրուած միակ ստեղծագործութիւնը:

Կազմուած է 11 միակցուած մասերէ, որոնք չրջափակուած են նախաբանով եւ վերջաբանով: Կ'ընդգրկէ հետեւեալ երգերը. Ա.- «Զու հայոց քաջազն», Բ.- «Ծիծեռնակ», Գ.- «Տարուայ եղանակներ. գարուն», Դ.- «Արաքսի արտասուքը», Ե.- «Երկու քոյր», Զ.- «Մահամերձ հայրենասէրը» («Ազնիւ ընկեր»), Է.- «Զարթի'ր, սիրտ իմ վչտահար», Ը.- «Աղքատ կին» («Ցուրտը փչեց»), Թ.- «Ջաղացպան», Ժ.- «Կիլիկիա» («Երբ որ բացուին»), ԺԱ.- «Երգ իտալացի աղջկան» («Մեր հայրենիք»):

Երգերուն հերթականութիւնը ընտրուած է գլխաւորապէս արագ-դանդաղ յաջորդականութեամբ:

Մասերը միակցուած են տարբեր սկզբունքներով: Այսպէս, Ա. երգը կ'աւարտի զարտուղեցնող յանգաձեւով, ուր հատած 43-ին, *տօ* մեծալարի $I_7$-ը կը հաւասարի *ռէ* մեծալարի ցած $VII_7$-ին հետ: Բ.-ը եւ Գ.-ը կապուած են երկհատածանի կապող մասով մը (հատածներ 54-55)՝ հիմնուած Բ.-ի ելեւէջային ոլորտին վրայ: Դ.ին մուտքը կը կանխորոչէ քառանսանման կապող մեղեդի մը (հատած 77): Դ.-ը եւ Ե.-ը միակցուած են երկու երգերէն անկախ, սլացիկ արփէժներով կազմուած կապող մասով մը (հատածներ 91-94)՝ ուր դաշնակումային միջնորդը փոքրացած եօթնեակ դաշնեակն է (հատած 19): Ե.-ն կ'աւարտի զարտուղեցնող յանգաձեւով (հատածներ 106-107): Է.-ն կը յաջորդէ Զ.-ին հակադրային սկզբունքով՝ առանց ոչ կառուցուածքային, ոչ դաշնակումային նախապատրաստութեան: Է.-ն եւ Ը.-ը բաժնուած են լոկ օժանդակ տոմինանթի դաշնեակով մը (հատած 136): Ը.-ը եւ Թ.-ն միաւորողը դարձեալ քառանսային մեղեդի մըն է, բայց աւելի ընդարձակ ու ազատ (հատածներ 152-153): Թ.-ին եւ Ժ.-ին միջեւ գոյութիւն ունի կապող, զարտուղեցնող միաձայն մաս մը (հատածներ 166-169)՝ հիմնուած Ժ.-ին կչռութա-ելեւէջային կաղապարին վրայ: Ժ.-ն եւ ԺԱ.-ը բաժնըւած են կապող երկհատածով (հատածներ 186-187), ուր դաշնակումային անցումը հակադրային է (հատած 186): Ինչպէս կ'երեւի, Կարա-Մուրզա ձգտած է անցումներու բազմատարրութեան:

Ընդգրկուած երգերուն մէկ մասը կ'եզրափակուի անկատար յանգաձեւով, ուր հիմնաձայնային դաշնեակը կը գտնուի հատածի թոյլ մասին մէջ (հատածներ 53, 90, 119, 185), կամ հիմնաձայնային հնչիւնը վերցուած է ոչ մեղեդիական դիրքով (հատած 203՝ pour finir): Ասիկա առիթ կու տայ առանց ընդհատելու երաժշտական հոսքը՝ կատարել զարտուղութիւն դէպի յաջորդող մասերը:

Այլ երգերու համար օգտագործուած է վաւերական կատարեալ յանգաձեւ (հատածներ 75-76, 105-106, 135-136, 151-152, 164-165): Բայց այստեղ, մէկ կողմէ մասերուն հակիրճութիւնը եւ վառ վերջաբաններուն բացակայութիւնը, միւս կողմէ ներխուժող կապող մասերը ու լրացուցիչ յանգաձեւերը, մեծապէս նպաստած են միջանցիկ զարգացումին:

Երգերը յօրինուած են կամ պարբերութեան ձեւով, կամ երկմասանի: Պարբերութեան ձեւով գրուած երգերուն համար ընտրուած է հիւսուածքի մէկ լուծում (դաշնեակային, արփէժ-դաշնեակային, ալպերթեան պասեր, եւ այլն.) իսկ երկմասանի ձեւերուն համար, կամ՝ երկրորդ մասը ենթարկուած է հիւսուածքի փոփոխութեան (օրինակ՝ հիւսուածքի խտացում Գ. երգին մէջ, հատածներ 56-63 եւ 64-76, դաշնեակներու փոխարկումը արփէժներու՝ Ժ. երգին մէջ, հատածներ 170-181 եւ 182-185) եւ կամ՝ ինչպէս պարբերութիւնը, պահպանուած է հիւսուածքի միանուագութիւնը (օրինակ՝ Է. երգը, հատածներ 120-127 եւ 128-136):

Նախաբանն ու վերջաբանը՝ կապուած չըլլալով որոշակի ձայնագրուած մեղեդիի հետ, օժտուած են ակնաչկանդ, հզօր երեւակայական Թռիչքով եւ մեծաԹափ, աշխոյժ սլացքով:

Ստեղծագործութեան մէջ օգտագործուած ոչ բոլոր հնարներն են հաւասարարժէք: Բայց ան՝ իր տրամաբանուած, հաւասարակշռուած լուծումներով, ինքնատիպ էջ մըն է Կարա-Մուրզայի լեզուամտածողութեան մէջ:

*Պօպուրի հայկական երգերից*ը հայկական դաշնակի գրականութեան չարային սեռի վաղ նմոյշ մըն է, սեռ մը՝ որ իր գերագոյն բիւրեղացումին պիտի հասնէր Կոմիտաս վարդապետի *Մշոյ Շորոր*ին մէջ:

## ԴԱՄԲԱՆԱԿԱՆ ՋՈՒՆՈՒԱԳ Ի ՄԱՀ ՄԵԾԻՆ ՀՐԱՊԱՐԱԿԱԽՕՍԻ ԳՐԻԳՈՐԻ ԱՐԾՐՈՒՆՒՈՅ

Եթէ *Պօպուրի*ի յօրինումին ժամանակ Կարա-Մուրզան դեռ անծանօթ մըն էր լայն հասարակութեան, *Դամբանական*ին ժամանակ (1892 Թ.) արդէն յարգուած ու հռչակուած երաժշտական անհատականութիւն մըն էր:

Սակայն ինչո՞ւ երաժշտահանին գրաւեց յատկապէս Գրիգոր Արծրունիի վախճանը: 1892 Թուականի Դեկտեմբեր 19-ին Թիֆլիսի մէջ կը մահանար մեծանուն հրապարակագիր, *Մշակ* լրագիրի հիմնադիր ու խմբագրապետ Գրիգոր Արծրունի (ծն. 1845, Մոսկուա), անօրինակ ցնցում յառաջացնելով Թիֆլիսահայութեան մէջ: Յուղարկաւորութիւնը՝ որ կը կատարուի Դեկտեմբեր 27-ին, կը վերածուի հայրենասիրական ցոյցի:

Յուղարկաւորութեան գլխաւոր կազմակերպիչ ու դամբանախօս Սիմոն Զաւարեան կը գրէ՝ Թէ «Արծրունու Թաղումը կատարուեց հանդիսաւոր կերպով, ինչպէս դեռ ոչ ոք չէր Թաղուել ոչ միայն Կովկասում, այլեւ ամբողջ Ռուսաստանում» (9):

Ալեքսանդր Շիրվանզադէ կը հաստատէ նոյն կարծիքը՝ երբ կը գրէ. «Յիշում եմ նրա (իմա՝ Գրիգոր Արծրունիի, Հ. Ա.) Թաղման օրն այսօրուայ պէս: Մի ցուրտ, բայց պայծառ օր էր: Այդ օրը ամբողջ հայ երիտասարդութեան սուգ էր: Յիշում եմ Զավարեանին՝ յուզուած, գունատ: Նա ամէն կերպ աշխատում էր իր ընկերների հետ, որ յուղարկաւորութիւնը լինի փառահեղ: Դա ունէր իր քաղաքական նպատակը: Հարկաւոր է լարել հասարակութեան Թմրած զգացումները եւ չարժել նրա մէջ հայրենասիրական ոգին» (10):

Ինչպէս Հրաչեայ Աճառեան նշած է՝ Գ. Արծրունիի «Թաղումը տեղի ունեցաւ... չտեսնուած շքեղութեամբ եւ ժողովրդական ցոյց դարձաւ. 40-50 հազար անձ յուղարկաւոր էր դագաղին: Եօթը դիակառքեր ծանրաբեռնուած էին պսակներով, որոնց Թիւը 300-ի էր հասնում. ցաւակցական հեռագրերի Թիւը 400-ից աւելի էր» (11):

Այս համահայկական յուզմունքին բնական արձագանգն է Կարա-Մուրզայի *Դամբանականը*, որ հարազատօրէն կ'արտացոլէ երաժշտահանի հոգեկան խռովքը:

Սակայն Կարա-Մուրզա ունէր նաեւ իր ենթակայական պատճառները: *Մշակ*-Գրիգոր Արծրունիի եւ Կարա-Մուրզայի միջեւ ի սկզբանէ գոյութիւն ունեցած է սերտ յարաբերութիւններ: 1882 Թուականէն սկսեալ, *Մշակ* լաւագոյն հայելին եղած է Կարա-Մուրզայի երաժշտական գործունէութեան, առարկայականօրէն արձանագրելով ու մեկնաբանելով իր նուաճումները: Նոյնիսկ, Գրիգոր Արծրունի՝ Կարա-Մուրզան կը համարէր «երաժշտութիւնն իմացող եւ երաժըշտութեան ու խմբական երգեցողութեան դասաւանդութեան գործին նուիրված մեր միակ հմուտ դասատուն», եւ անհրաժշտ կը նկատէր զինք հրաւիրել Թիֆլիս՝ հայկական դպրոցներուն մէջ կանոնաւոր երգեցողութիւն հաստատելու համար (12):

Ի դէպ, *Մշակի* ու Կարա-Մուրզայի փոխադարձ յարգանքը կը շարունակուի նաեւ մեծ հրապարակագիրի մահէն ետք: Առաջինը՝ նոյն հետեւողականութեամբ թերթը կը կանգնի երաժշտահանին եւ կ'արձագանգէ իր յաջողութիւնները: Իսկ 1899 թուականէն մինչեւ իր մահը՝ շուրջ երեք տարի, Կարա-Մուրզա կը հանդիսանայ *Մշակի* միայնուն երաժշտական քննադատը, բացայայտելով երաժշտագիտական խոր ըմբռնում, բարձր հասկացողութիւն եւ ուղղամիտ մտածելակերպ [13]:

Հետեւաբար, թէ՛ համազգային եւ թէ՛ անձնական մակարդակով Կարա-Մուրզա հզօր դրդապատճառներ ունէր ստեղծագործելու Գ. Արծրունիին նուիրուած *Դամբանականը*:

Ստեղծագործութիւնն ունի բարդ եռմասանի կառուցուածք.

Նախաբան (1-4)

A: a(5-12) + b(13-20) + a(21-28)

B: c(28-44) + d(45-52)

A (da capo)

Ան կ'արտացոլէ երաժշտահանին յուզումնաթաթաւ ներաշխարհը, խորաթափանց արտայայտչական ուժականութիւնը: Կը բովանդակէ զգայուն, ինքնակեդրոն երաժշտութիւն մը, ուր երբեմն կը լսուին *Լռեց, ամպերը* քաղաքային երգին ելեւէջները (հատածներ 5-6):

*Դամբանականը*՝ ԺԹ. դարու հայկական դաշնակի գրականութեան գեղեցիկ ներդրումներէն է, արժանի յատուկ ուշադրութեան ու կատարումի [14]:

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1.-Ռուբէն Թէրլէմէզեան, «Քրիստափոր Կարա-Մուրզա (նրա կեանքը եւ գործունէութիւնը)», *Հանդէս ամսօրեայ*, հայագիտական ուսումնաթերթ, Վիեննա, 1924, Սեպտեմբեր - Հոկտեմբեր, թիւ 9-10, էջ 464:

2.-Ա. Երեմեան, «Թիֆլիսի հայկական պանթէոններում», *Հանդէս ամսօրեայ*, հայագիտական ուսումնաթերթ, Վիեննա, 1938, Սեպտեմբեր-Դեկտեմբեր, թիւ 9-12, էջ 402-403:

3.-Հ. Գր. Հէպոյեան, «Քրիստափոր Կարա-Մուրզա եւ իր դերը հայ երաժշտութեան պատմութեան մէջ», *Հանդէս ամսօրեայ*, հայագիտական ուսումնաթերթ, Վիեննա, 1959, Մայիս-Օգոստոս, թիւ 5-8, էջ 276:

4.-Ալեքսանդր Շահվերդեան, *Հայ երաժշտութեան պատմութեան ակնարկներ, XIX-XX դ.դ. (մինչսովետական շրջան)*, Երեւան, 1959, էջ 267:

5.-«Ռուսահայ երաժշտապետ մը», *Արեւելք*, օրագիր, Կ. Պոլիս, 18/30 Յուլիս 1887, թիւ 1060, էջ 1:

6.-Արամ Անտոնեան, «Կարա Մուրզա», *Արեւելք*, օրաթերթ, Կ. Պոլիս, 10/23 Ապրիլ 1902, թիւ 4917, էջ 1:

7.-Մ. Հ. Մուրադեան, *Քրիստափոր Կարա-Մուրզան եւ բազմաձայնութեան արմատաւորումը հայ երաժշտութեան մէջ*, Երեւան, 1956, էջ 174:

8.-«Ներքին լուրեր», *Մշակ*, լրագիր, Թիֆլիս, 25 Յունիս 1883, թիւ 94, էջ 2:

9.-«Գր. Արծրունու յուղարկաւորութիւնը եւ Ս. Ջաւարեանի դամբանականը», *Վէմ*, երկամսեայ հանդէս, Փարիզ, 1934, Սեպտեմբեր-Հոկտեմբեր, թիւ 5, էջ 105:

10.-Ալ. Շիրվանզադէ, «Անցեալ դէմքեր, Գրիգոր Արծրունի», *Հայրենիք*, ամսագիր, Պոսթըն, 1924, Փետրուար, թիւ 4, էջ 76:

11.-Պրոֆ. Հ. Աճառեան, «Գրիգոր Արծրունի (1845-1892)», *Էջմիածին*, ամսագիր, Էջմիածին, Մայիս 1960, էջ 35:

12.-Գ. Ա., «Անհրաժեշտ առաջարկութիւն», *Մշակ*, լրագիր, Թիֆլիս, 19 Յունուար 1891, թիւ 7, էջ 1:

Հարկ է նշել՝ որ իր բազմաբնոյթ խմբագրականներում մէջ, Գ. Արծրունի չէ մոռցած ազդեցիկ էջեր յատկացնել նաեւ երաժշտական հարցերու վերաբերեալ: Այսպէս, «Մի նոր գործ» յօդուածին մէջ, կը գրէ՝ Եւրոպայի նմանողութեամբ տեղական ոյժերէ բաղկացած նուագախումբերու եւ երգչախումբերու կազմութեան անհրաժեշտութիւնը (*տե՛ս Մշակ*, 9 (21) Նոյեմբեր 1879, թիւ 195, էջ 1-2): «Տաղանդները կորչում են»-ի մէջ՝ բենոր Մօյիսեանի օրինակը առանցք ունենալով, կը նշէ հայ հարուստներուն անտարբերութիւնը օժանդակելու հայ տաղանդներուն եւ մշակելու անոնց ձիրքերը: Բայց եթէ՝ նոյն Մօյիսեան յետագային անուանի երգիչ դառնայ, նոյն հայերը պիտի հպարտանան իրմով (*տե՛ս Մշակ*, 15 (27) Օգոստոս 1881, թիւ 151, էջ 1): «Երաժշտական կրթութիւն»-ին մէջ կը շեշտէ դպրոցներուն մէջ երաժշտական կանոնաւոր դաստիարակութեան անհրաժշտութիւնը՝ մշակելու, զարգացնելու եւ կրթուստէ փրկելու երաժշտական ընդունակութիւնները, որուն պակասը զգալի է թիֆլիսահայ դպրոցներուն մէջ (*տե՛ս Մշակ*, 23 Փետրուար (7 Մարտ) 1882, թիւ 30, էջ 1): «Րիխարտ Վագնէր»-ին մէջ,

երաժշտահանին մահուան առիթը կ՚օգտագործէ՝ պախարակելու գերմանական քաղաքական դիրքորոշումները եւ ցեղային մոլեռանդ գերապատուութեան սկզբունքը, որոնց հետեւորդն էր Վակնէր: Արծրունի հակասութիւն մը կը գտնէ հանճարեղ երաժշտահանին եւ միակողմանի ցեղապաշտին միջեւ (*տե՛ս Մշակ*, 5 Փետրուար 1883, թիւ 20, էջ 1): «Անհրաժեշտ առաջարկութիւն»-ին մէջ կը գանգատի Թիֆլիսի հայկական դպրոցներուն մէջ երգեցողութեան եւ երաժշտութեան կանոնաւոր դասատուութեան պակասէն, ու կը շեշտէ անոր անհրաժեշտութիւնը՝ թէ՛ երգեցողութիւնը նոր սերունդին մէջ արմատաւորելու տեսանկիւնէն, եւ թէ՛ իբրեւ մանկավարժական միջոց՝ մանուկներու համակողմանի զարգացումին համար (*տե՛ս Մշակ*, 19 Յունուար 1891, թիւ 7, էջ 1):

13.-Հայ երաժշտութեան պատմութեան մէջ շատ քիչ են երաժշտական իսկական քննադատները՝ որոնք հետեւողականօրէն ելոյթներ ունեցած են մամուլին մէջ: Այս առումով յիշատակելի են, օրինակ՝ բացի Կարա-Մուրզայէն, Յովհաննէս Աճէմեան՝ Պոլսոյ *Արեւելք*ի եւ ֆրանսական թերթերու մէջ, Մարգարիտ Բաբայեան՝ Թիֆլիսի *Արշալոյս*ին մէջ, Յովհաննէս Աւագեան՝ Նիւ Եորքի *Հայաստանի կոչնակ*ին մէջ, եւ միջազգային համբաւի տիրացած Ֆելիքս Աբրահամեան, Անգլիայի գլխաւոր օրաթերթերէն մէկուն՝ *Թայմզ*ի երկարամեայ քննադատը:

14.-Զայն նուագեցինք 1993 Ապրիլ 24-ին, Գահիրէի «Պըլըքտանեան սրահ»-ին մէջ, Մեծ Եղեռնի նուիրուած յուշերեկոյին (*տե՛ս* Յ. Տ. Պ., «Ապրիլեան եղեռնի համազգային յուշերեկոյ», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 29 Ապրիլ 1993, թիւ 22301, էջ 3):

## ՊՕՊՈՒՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԳԵՐԻՑ

### ԱՂԲԻՒՐ

1883 Թուականին Մոսկուայի մէջ տպագրուած բնագիրն է, որմէ օրինակ մը կը գտնուի Երեւանի «Զարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Կարա-Մուրզայի դիւանին մէջ, թիւ 76:

## ԴԱՄԲԱՆԱԿԱՆ ՔՈՒՆՆՈՒԱԳ Ի ՄԱՀ ՄԵԾԻՆ ՀՐԱՊԱՐԱԿԱԽՕՍԻ ԳՐԻԳՈՐԻ ԱՐԾՐՈՒՆԻՈՅ

### ԱՂԲԻՒՐ

Երեւանի «Զարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Կարա-Մուրզայի դիւանի թիւ 23 ձեռագիրն է:

Հայերէն խորագիրին տակ, ֆրանսերէն աւելցուած է՝ Marche Funèbre:

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

**Հատուածներ 2-4**

Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



Թենորի կչռոյթին մէջ վրիպակ կայ: Զայն սրբագրեցինք հատուած 1-ին եւ հատուածներ 2-4-ի աջ ձեռքին նմանողութեամբ:

**Հատուածներ 12, 20**

Հատուած 12-ի վերջաւորութեան գրուած է՝ Fine, եւ հատուած 20-ի վերջաւորութեան՝ D.C. Marcia al fine senza repet.: Նպատակայարմար գտանք ջնջել այս գրութիւնները եւ հատուած 20-էն ետք աւելցնել կրկնութեան համար նախատեսուած ութ հատուածները:

**Հատուած 43**

Ձախ ձեռքի առաջին քառորդը գրուած է՝



*Մի* ձայնանիշը կամ վերածուելու է *պեքարի* եւ կամ ջնջուելու է: Վերջինս աւելի բնական կը թուի ըլլալ, քանի որ *mo*երը նախորդ երկու հատուածներու բամբերու ութեակային չարժումին շարունակութիւնն են:

**Հատուած 52**

Վերջաւորութեան գրուած է D.C.: Յստակ չէ կրկնութեան սահմանները: Հաւանաբար, նկատի ունի A-ը ամբողջութեամբ:

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

# ԲԱՌԱՑԱՆԿ
# ՕԳՏԱԳՈՐԾՈՒԱԾ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵԶՐԵՐՈՒ

| | |
|---|---|
| Բամբ | Basse |
| Դաշնակում | Harmonisation |
| Դաշնեակ | Accord |
| Եռմասանի | Forme triple |
| Երաժշտահան | Compositeur |
| Երկմասանի | Forme double |
| Զարտուղութիւն | Modulation |
| Խմբավար | Chef de chœur |
| Կառուցուածք | Forme |
| Կատարեալ յանգաձեւ | Cadence parfaite |
| Կշռոյթ | Rythme |
| Հատած | Mesure |
| Հիմնաձայն | Tonique |
| Հիւսուածք | Facture |
| Ձայնանիշ | Note |
| Մեծալար | Majeur |
| Յանգաձեւ | Cadence |
| Շար | Suite |
| Ութեակ | Octave |
| Պարբերութիւն | Paragraphe |
| Փոքրացած եօթնեակ | Septième diminué |
| Քառորդ | Noire |

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Գահիրէի Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան «Սաթենիկ Ճ. Չագըր հիմնադրամ»-ը՝ Հայկ Աւագեանի խմբագրութեամբ եւ ծանօթագրութեամբ լոյս ընծայած է հետեւեալ երաժշտական հատորները.

1.-**Տիգրան Զուհաճեան,** *Սուրբ, սուրբ,* քառերգի եւ սեննեկային նուագախումբի համար եւ *Հայր մեր,* սոփրանոյի, ալթոյի, խզական երգչախումբի եւ սեննեկային նուագախումբի համար, Գահիրէ, 1999 (74 էջ)

2.-**Տիգրան Զուհաճեան,** *Արշակ Բ.,* օփերա չորս արարով, իտալերէն լիպրեթթոյով, Գահիրէ, 2000

ա.-Դաշնակի եւ երգի համար (vocal score) (440 էջ)
բ.-Նուագագրութիւն (orchestral score) (804 էջ)
գ.-Առանձին նուագարաններ՝ կազմուած 24 հատորէ (1549 էջ)

3.-**Տիգրան Զուհաճեան,** *Աւէ Մարիա,* տարբերակներ, Գահիրէ, 2000 (82 էջ)

4.-**Տիգրան Զուհաճեան,** *Կատոթ,* ջութակի, թաւ ջութակի, դաշնակի եւ հարմոնիումի համար եւ *Զորս փիւկ,* լարային եռանուագի եւ քառանուագի համար, Գահիրէ, 2000 (52 էջ)

5.-**Մակար Եկմալեան,** *Դաշնակի ստեղծագործութիւններ,* Գահիրէ, 2000 (54 էջ)

6.-**Ալեքսանդր Սպենդիարեան,** *Գուշակուհին,* քառաձեռն դաշնակի համար, Գահիրէ, 2000 (22 էջ)

7.-**Արքատի Քուկէլ,** *Էջեր ալպոմէն* եւ *Հայկական պար,* դաշնակի համար, Գահիրէ, 2000 (18 էջ)

